բանալ պատմութեան արժէքը, կամ իմացականութիւնը հակադրել պատմութեան, ինչպէս կ'ընեն բնապաշտները: Պատմութեան ուսումն է մի՛այն, իբրեւ ազրիւր քննադատական ոգիի, որ կ'առաջնորդէ մարդկութիւնը իրական ազատականութեան: Անոնց որ բարձր մշակոյթի այդ ուսումը, արհամարհանքի առարկայ, խոյս կուտայ ցեղի կամ դասակարգի բռնատիրական բնազդներու հալածանքին առջեւ:

## Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶԻ «ԵԳԻՊՏԱՑԻ» ԿՈՄԻՏԷՆ ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր շրջանի բոլոր ընկերները յառաջիկայ Հինգշաբթի երեկոյ ժամը 8.30ին 32, Avenue des Gobelins սրճարանի վերնայարկը: Կարեւոր օրակարգ:

Հ. Յ. Դ. Պաւլվառ Օտտոի Պատանեկան Միութեան ընդհ. ժողովը տեղի կ'ունենայ այսօր Կիրակի կէս օրէ վերջ ժամը 2ին իր սեփական Գրադարանին մէջ: Կարեւոր օրակարգ:

## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ ԿԸ ՏՕՆՈՒԻ

### ՓՕՆ ՏՕՊՆԱՅԻ ՄԷՋ

Այսօր կիրակի կէս օրէ վերջ ժամը 3ին
Պիտի խօսի ընկեր ԼԵՒՈՆ ԶՈՐՄԻՍԵԱՆ
Մանրամասնութիւնները տեղւոյնվրայ:

### ՌՕՄԱՆԻ ՄԷՋ

ՑԵՏԱԶԳՈՒԱԾ Է ՀՈԿՏԵՄԲԵՐ 14ին

### ԼԻՈՆԻ ՄԷՋ

13 Հոկտեմբեր Շաբաթ երեկոյ ժամը 8.30ին
ԵՐՐՈՐԴ ԹԱՂԱՊԵՏԱՐԱՆԻ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ
Պիտի խօսի ընկեր Վ. ՓԱՓԱԶԵԱՆ

×

վերոյիշեալ հանդէսներուն պիտի ծախուի ԵԻՐ. Կ. ԿՈՄԻՏԷԻ հրատարակած «ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐ» բացառիկ թիւը: Գինը 3 ֆրանք:
Գաւառներու եղած ապսպրանքներու համար ղրկել 4 ֆր. նամակադրոշմ:

## ԵՐԵԿՈՅԹ-ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Հ. Յ. Դ. ՓԱՐԻԶԻ «ՌՈՍՏՈՄ» ԽՈՒՄԲԻ ԿՈՂՄԷ
3 Նոյեմբեր Շաբաթ երեկոյ:
կը խնդրուի նկատի ունենալ այս Թուականը:

## ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ԲԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

կազմակերպուած Ֆր. Հ. Կ. ԽԱՉԻ ՌՈՄԱՆԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ ԿՈՂՄԷ
Այս կիրակի կէս օրէ վերջ ժամը 2ին
կը խօսի՝ տիկին Ն. ՔԻՊՐԻԹՃԵԱՆ
Մանրամասնութիւնները յաջորդաբար:

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

## ԳՈՅԱՄԱՐՏ օրացոյց 1935

Հրատարակութիւն Հ. Յ. Դ. ՄԱՐՍԷՅԼԻ ՊԱՏԱՆԵԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ

1.— Ազգային քննական պատմութիւն, Բագրատունեաց Հարստութենէն մինչեւ Ռուբինեանց Հարստութիւն:

2.— Ամփոփ նկարագրութիւն ազատագրական պատմական դէպքերու եւ դէմքերու, առանց կուսակցական խտրութեան:

3.— Կրօնական տօներու լիակատար յիշատակութիւն:

4.— Օրացոյցին ճակատը զետեղուած է Հ. Յ. Դ. Զինանշանը՝ եզերուած զոյգ եռագոյնով, մէջտեղը «ՀԱՅԿԱԿԱՆ ԳՈՅԱՄԱՐՏԸ» (գծուած Հ. Ալեւանաքի կողմէ):

5.— Օրացոյցին ներքեւ Դաշնակցութեան Երրորդութիւնը:

6.— Ձախ կողմը Միքայէլ Վարանդեան, Մ. Նալբանդեան եւ Թումանի մարտական խումբը:

7.— Աջ կողմը Հայր Աբրահամ, Գամառ Քաթիպա, Բաաէնի եւ Տէլիպապայի ֆէտայիներու խմբանկարը:

8.— Օրացոյցին մէջ զետեղուած են անցեալ տարուան կողքին վրայի նկարները եւ եօթը նոր նկարներ:

Հայրենակիցներ, չզրկուելու համար այս գեղեցիկ հրատարակութենէն դիմեցէք այժմէն Միութեան հասցէին՝
Karnig Antikian, 49, rue Nationale, Marseille:

Գին՝ Մարսէյլի 5 ֆր.: Գաղութներ 5.50: Պալքաններ եւ Սուրիա 5:
Ցպագրութիւն՝ ԵՆՈՎՔ ԱՐՄԷՆ:






## ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ԲԱՑԱՌԻԿ ԵՐԵԿՈՅԹ

ՆՈՅԵՄԲԵՐ 1 ՀԻՆԳՇԱԲԹԻ ԿԷՍ ՕՐԷ ՎԵՐՋ ԺԱՄԸ 4ԻՆ
SALLE GAVEAUի ՄԷՋ,
Ղեկավարութեամբ ԱՐԱՅ ՊԱՐԹԵՒԵԱՆԻ
Կը մասնակցի ջութակահարուհի ԼԻՍԱ ՏԷՍԻՐՃԵԱՆ
եւ 50 հոգինոց ՍԻՆՖՕՆԻՔ նուագախումբ
Բացառաբար ժողովրդական գիներով
Մանրամասնութիւնները՝ ազդերին:

### ԹԷՅԱՍԵՂԱՆ

Ֆր. Հ. Կ. Խաչի Շավիլի մ. ճիւղին կողմէ, այսօր կիրակի կէս օրէ վերջ ժամը 4ին, Մատուռ-Մանկապարտէզի սրահին մէջ: Կը հրաւիրուին անդամ-անդամուհիները եւ համակիրները՝ շաբէլի ժամանց:



## ՎԱՐՁՈՒ Է

CHELLES-COURNAY (S. & M.) արուարձանի մէջ, կայարանի մօտ վիլլայի մը երկրորդ յարկը, երեք մեծ սենեակներ, կազ եւ ջուր, մշակելի 1600 քառ. մեթր հողին կէսը, լաւ շրջապատուած, տարեկան վարձք՝ 2000 ֆրանք:

Հաղորդակց. միջոց.— Կար տը լ'Էսթէն 20 վայրկեան, կարին մօտ: Փորթ Վէնսէնէն ծանրակառք թիւ 113:

Դիմել դերձակ Կ. ՄՈՒՐԱՏԵԱՆԻ 13' Rue Saulnier, Paris (9):

Ունիմ նաեւ Փարիզի տանս մէջ կահաւորուած սենեակ մը, առանձին կնոջ մը եւ կամ օրիորդի մը համար:



### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Յ. Հ. Կ. ԽԱՉԻ Անժէնի մասնաճիւղը իր խորին շնորհակալութիւնը կը յայտնէ յարգելի բժիշկ Հ. Օհանջանեանին, իր հմտալից եւ ձրի ծառայութեան համար, նոյնպէս բոլոր անոնց՝ որոնք իրենց խօսքերով, երգերով եւ արտասանութիւններով ջերմ խանդավառութիւն եւ զուարթ ու ժողովրդական մթնոլորտ մը ստեղծեցին:
Վարչութիւն









մէնէն աւելի կը յիշուի երկրագոր – ծական նախարար Պ. Քէօյլի անունը: Ուրիշ Թեկնածու մըն է նախկին վարչապետը, Պ. Լաւալ, որ նախապէս ընկերվարական էր, բայց այժմ ոչ մէկ հոսանքի կը պատկանի: Իսկ արտաքին նախարարութեան համար ամէնէն հաւանական Թեկնածուն կը համարուի Պ. Ֆլանտէն, հանրօգուտ շինութեանց նախարարը, որ կեդրոնին կը պատկանի, քիչ մը աւելի ձախ: Կը յիշուի նաեւ ծովային նախարարը, Պ. Փիէթրի:

Ամէն պարագայի մէջ, Պ. Տումէրկ պիտի դոհանայ պաժամեայ կարգադրութեամբ, մինչեւ որ բացուի խորհրդարանը:

## Պ. Պառթուի յուղարկաւորութիւնը

Երէկ կէս օրէն յետոյ տեղի ունեցաւ արտաքին նախարար Պ. Պառթուի յուղարկաւորութիւնը: Արտակարգ միջոցներ ձեռք առնուած էին, բարեկարգութեան համար:

Միակ դամբանականը խօսեցաւ Պ. Տումէրկ: Եկեղեցական արարողութենէն յետոյ, որ կատարուեցաւ Էն – վալիտի եկեղեցին, մարմինը փոխադրուեցաւ Փէռ Լաշէզի գերեզմանատունը: Ներկայացուցիչներ եկած էին բոլոր երկիրներէն:

Այս առթիւ մեզի կը հաղորդեն թէ Փրանսական բանակի նախկին կամաւորներուն անունով ծաղկեպսակ մը տարած էր Պ. Ց. Տարայեան:

## Վիոլէթ Նոզիէռ մահապարտ

Հակառակ մօրը ներման եւ պաշտպան փաստաբանին պերճախօսութեան, եղեռնադատ ատեանը մահուան դատապարտեց հայրասպան Վիոլէթը, որ 19 տարեկան է: Թերթերը կը գրեն թէ վերջին պահուն վճռական դեր կատարեց իրաւագիտական ուսանող մը, պատմելով աղջկան խոստովանութիւնները:

Երբ վճիռը հաղորդեցին, Վիոլէթ ինքզինքէն ելլելով, սկսաւ պոռալ – կանչել եւ անարգել դատաւորները: Անկապ խօսքեր կ'արտասանէր, — «Աղտոտ մարդիկ, մայրս ներեց, դուք չէք ներեր… անձնասպան պիտի ըլլամ, չեմ ուզեր որ գլուխս կտրեն… կ'անիծեմ հայրս, կ'անիծեմ մայրս» եւն: Այդ միջոցին փորձ կը կատարուէր ստորագրել տալու վե – րաքննութեան խնդրագիրը: Այնքան մոլեգնած էր որ, կարելի չեղաւ համոզել եւ պահակները ստիպուեցան դուրս հանել: Ցետոյ կարելի եղաւ ստորագրել տալ:

իր բոլոր գործերուն մէջ, Պառթու կը մնայ ոչ թէ խոր վերլուծողը կամ քննադատը, այլ հաւաքիչը, դասաւորիչը, մատենադարանի չունչը,— ամէն տեղ՝ յիշատակներ եւ գիրքեր գնելու եւ պահելու, աննման հաւաքածոներ շինելու իր տենչը, որ կը յայտնուի նոյն իսկ իր ուսումնասիրութեանց խմբագրութեան մէջ: Այդ խմբագրութիւնը յաճախ հնութենապահի մը կատարած ցուցադրութիւնն է կամ թանգարանի մը առաջնորդին գործը, բայց ոչ հոգե – բնախօսական պրպտումներու արդիւնքը:

Փարիզի Փրանսացի մատենագրական ներուն մէջ Պառթու կը մնայ մէկը ամէնէն ճաշակաւոր եւ հասկցող իրաքաղներէն, որոնք հարուստ եւ թանկագին հաւաքածոներ ունին: Այսպէս Պառթու ունի Լամարթինի մէկ հրաշալի կիսանդրին, որ գործն է Տավիթ տ'Անժէի: Կ'ըսուի թէ կտակած է Ֆրանսական Ակադեմիային: Ունի նաեւ մաս մը Լամառթինի եւ Հիւկոյի հազուագիւտ ձեռագիր – ներէն: Դարձեալ ունի հազուագիւտ կամ պերճատիպ հրատարակութիւն – ներ:

Կուտանք ցանկ մը իր իսկ պատ – րաստած գործերէն.— Բանաստեղծի մը սէրերը (Հիւկոյի մասին է), Զօրավար Հիւկօ, Միրապօ, Տանթոն, Լամարթին հռետոր, Ինը Թէրմիտոր, Լամարթինի շուրջ, Անաթոլ Ֆրանս իբրեւ յեղափոխութեան պատմագիր, Պօտլէրի շուրջ, Ալֆրէտ տը Վինեիի անտիպ նամակները ուղղեալ Վիքթոր Հիւկոյի, եւ վերջապէս բազմաթիւ ուրիշ գրական, պատմական ու քաղա – քական գործեր:

Պառթուի ոճը, յստակ եւ ակադե – մական, կը մատնէ իր սէրը լեզուի մաքրութեան մասին: Իբրեւ խօսող, ճարտասան լեզու մը ունէր,— իր պերճախօսութիւնը կը սկսի արդէն դպրոցական դասարաններէն:

1918ին մտաւ «անմահներու կամա – ր»ին տակ,— ակադեմական ընտր – ուեցաւ՝ գրաւելով աթոռը Ռուժոնի (Հրապարակագիր եւ քննադատ):



ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Պատրիկ եւ Փառանձեմ Խորասանճեաններ կը փնտռեն իրենց եղբայրը Սարգիս, Թալասցի, 24 տարեկան: Երկու տարի առաջ կը գտնուէր Պուէնոս Այրէս (Արժանթին): Իր մասին լուր ունեցողներէն կը խնդրուի իմացնել՝ *Paranzim Khorasandjian, 109 rue Moncey– Lyon. (France).*


Le Gérant: **H. STEPHAN**
Imprimerie A. DER (AGOPIAN)
17, Rue Dareesme, PARIS (13e)

նէ որ անխտիր բոլոր պետութիւնները գործակցին խաղաղասիրական ոգիով եւ հանդարտօրէն, որպէսզի պատասխանատուութիւնները ճշդուին: Նոյնպէս, կը պահանջէ որ միջոցներ ձեռք առնուին, որպէսզի ապագային չկրկնուին այսպիսի դէպքեր: Արդարեւ, եթէ միջազգային յարմար միջոցներ ձեռք չառնուին եւ չգործադրուին պահանջուած ուղղամտութեամբ եւ բարեկամեցողութեամբ, մնայուն խորհուրդը կը կարծէ թէ շատ ծանր ընդհարումներ պիտի պատահին: Փոքր Համաձայնութեան կառավարութիւնները իրենց բացարձակ համերաշխութիւնը կը յայտնեն Եուկոսլաւիոյ եւ յանձն կ'առնեն խստօրէն գործադրել իրենց յանձնառութիւնները եւ անխոնջ եռանդով շարունակել այն քաղաքականութիւնը զոր վարած են մինչեւ այսօր»:

Պ. Մաքսիմոս յայտարարեց թէ պալքանեան միութեան յառաջիկայ ժողովը պիտի գումարուի հոկտեմբեր 30ին, Էնկիւրիի մէջ:

Ռումանիոյ Կարոլ Թագաւորը եւ Եուկոսլավիոյ խնամակալ իշխանը ունկնդրութեան ընդունելով նախարարները, իրենց հաւանութիւնը յայտնեցին տրուած որոշումներուն:

ԱՐՏԱՔԻՆ ՆԱԽԱՐԱՐԸ Հռոմ պիտի երթայ նոյ. 5ին, գլուխ հանելու համար այն ծրագիրը զոր կազմած էր հանգուցեալ Պ. Պարթու: Փարիզի մէջ լաւատես են այս նամբորդութեան մասին, հակառակ Մարսէյլի մահափորձին առթիւ տիրող անորոշութեան:

ՊԵՐԼԻՆԻ ՄԷՋ ՄԵՌԱՒ Զօր. Ֆօն Քլուք, 1914ի գերմանական արշաւանքին հրամանատարը, որ չարաչար պարտութեան մատնուած էր Մառնի վրայ: 88 տարեկան էր:

ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ 15րդ միջազգային խորհրդաժողովը կը բացուի այսօր, Թոքիոյի մէջ: Պատուիրակներ ղրկած են 60 երկիրներ:

## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ ԿԸ ՏՕՆՈՒԻ

### ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

կազմակերպուած Տէսինի *ՔՐԻՍՏԱՓՈՐ, ՁԱՒԱՐԵԱՆ եւ ՌՈՍՏՈՄ* խումբերու կողմէ եւ հովանաւորութեամբ *ՏԷՍԻՆԻ ԿՈՄԻՏԷԻՆ*

*Այսօր կիրակի իրիկուան ժամը 8ին Հ. Յ. Դ. ՏԱՆ մէջ*

Կը խօսի ընկեր **Վ. ՓԱՓԱԶԵԱՆ**

գեղարուեստական բաժնին կը մասնակցին ընկ. *Ա. Մելքոնեան (ջութակ)*, ընկերներ *Լ. Ալէմեան, Մ. Միրզէ, Ա. Մարգարեան, Տ. Չէլօեան (արտասանութիւն)*, Օրիորդ *Ծ. Տէր Պետրոսեան, Թաթավյաճեան, Տիկին Հ. Գրիգորեան (երգ)*: փոքրիկ աղջիկներու կողմէ շուրջպար եւ պար մասնակցութեամբ ընկ. *Էրօի (պանժօ)* եւ *Ռուբէնիկի (ճազ)*:

կը պարէ փոքրիկն *Պետօ Դըրըզճեան*:

Ցանկերու մասնակցութեան համար 2 ֆր., անգործներու մուտքը ազատ է:

նի, զոր չի ճանչնար բանականութիւնը,— միթէ բանականութեա՞մբ կը սիրէք դուք »:

Ցետոյ անծանօթ հեղինակը կ'ըն- դունի թէ « սէրը նոյնն է ամէն տեղ», — տեսակէտ մը որ հիմնուած է ԺԸ. դարու ընկերային հոգեբանութեան ծանօթ ըմբռնումներուն վրայ, որոնք կը պնդէին թէ « մէկ է բնութիւնը ամէնուրեք »: Ընդհակառակն, Փասքալ կը գրէ թէ « ի՞նչ այլազան բնութիւններ կան մարդկային բնութեան մէջ»:

Այս ամէնէն վերջ, Պունէլի կը վճռէ թէ անվիճելի է որ Փասքալ չէ « Ճառ սիրոյ զգացումներուն մասին » գործին հեղինակը:

## ՀԱՅ ԲՈՅԺ _ (HAY-POUJ)

ժողովրդական ամսաթերթ բժշկութեան եւ առողջապահութեան

*Տարեկան 12 թիւի համար՝ ՖՐԱՆՍԱ 20 ֆրանք, ԱՐՏԱՍԱՀՄԱՆ 25 ֆր.*:

Դիմել՝ **Dr. CH. AIVAZIAN, 17, Rue Damesme,** PARIS

1.— *Առաջին թիւէն տպած ենք պահանջէն աւելի: Բոլոր անոնք որ կը փափաքին, նմոյշի համար, ձրի ՀԱՅ - ԲՈՅԺ մը ունենալ, թող գրկեն իրենց հասցէն մեզի: Առաջին թիւը կը ղրկենք ձրի,— եթէ հանին, կը բաժանորդագրուին*:

2.— *Երկրորդ թիւը չեն ստանար բոլոր անոնք, որ նմոյշի համար ՀԱՅ - ԲՈՅԺ ստացած են՝ բայց չեն վճարած բաժնեգինը մինչեւ ամսագլուխ*:

3.— *ՀԱՅ - ԲՈՅԺ, իր տեսակին մէջ հայ գաղութներու միակ ամսաթերթը, առաջին իսկ թիւով այնքան գնահատութեան արժանացաւ, որ ներկայիս կը հաշուէ 763 բաժանորդ: Հասած գնահատական նամակներէն կը հետեւցնենք որ ՀԱՅ - ԲՈՅԺ շուտով պիտի դառնայ ամէնէն շատ տարածուած հայ պարբերականը եւ*

*ՀԱՅ ՏՈՒՆԵՐՈՒ ԲԺԻՇԿԸ*

4.— *Փնտռեցէք երկրորդ թիւը ամսագլխուն, միշտ հետաքրքրական եւ այլազան բովանդակութեամբ, ժողովրդական մաքուր լեզուով եւ ընտանիքներու համար օգտակար գիտելիքներով*:

## ԵՐԵԿՈՅԹ_ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

կազմակերպուած

*ՀԱՅ ԿԱՄԱՒՈՐՆԵՐՈՒ եւ ՄԱՐՏԻԿՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ*

դեկտեմբեր 15ին Շաբաթ գիշեր

Նկատի ունենալ այդ թուականը:

## ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ԲԱՑԱՌԻԿ ՅԵՐԵԿՈՅԹ

ՆՈՅ. 1 ՀԻՆԳՇԱԲԹԻ (ՄԵՌԵԼՈՑԻ ՕՐ) ԿԷՍ ՕՐԷ ՎԵՐՋ ԺԱՄԸ 4ԻՆ

**SALLE GAVEAU**ի ՄԷՋ,

*Ղեկավարութեամբ ԱՐԱՅ ՊԱՐԹԵՒԵԱՆի*

Կը մասնակցի ջութակահարուհի *ԼԻՏԻ ՏԷՄԻՐՃԵԱՆ*

եւ 50 նուագիչով ՍԷՆՖՕՆԻՔ նուագախումբ

Բացառաբար ժողովրդական գիներով

Մանրամասնութիւնները՝ ազդերին:

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

## «ՎԷՄ»

Մամուլի տակ է եւ քանի մը օրէն լոյս կը տեսնէ Վ.ԵՑԵՐՈՐԴ թիւը հետեւեալ բովանդակութեամբ.—

*Վ. ՄԻՆԱԽՈՐԵԱՆ՝ «Փոթորիկից առաջ», Յ. ԻՐԱԶԵԿ՝ Եւս մի հին թատերգութիւն», Յ. ՋԱՒՐԵԱՆ՝ «Սայեաթ Նովա» (վերջ), ԶՕՐ. Գ. ՂՈՐՂԱՆԵԱՆ՝ « Հայաստանի հանրապետութիւնը եւ պետութիւնները » (վերջ), Ա. ԽՈՆԴԿԱՐԵԱՆ՝ « Օպոզիցիան Հանր. Հայաստանում », ՍԱՄՍՈՆ՝ « Հայաստանի անդր. գեսպանը Պարսկաստանում », ՊՐՕՖ. Զ. ԱՒԱԼՈՎ՝ « Բաթումի խորհրդաժողովը » (վերջ)*, Հայաստանի խորհրդ. Արձանագրութիւնները, Նոր քուղթեր, Կեանք եւ Մշակոյթ, *Ռ. ԱԲՐԱՀԱՄԵԱՆ, Բ. ԹԱՇԵԱՆ եւայլն*: Գիրք եւ մամուլ, *Գրախօսական՝ Ա. ԱԲԵՂԵԱՆ, Յ. ՋԱՒՐԵԱՆ*: Խմբագրութեան կողմից, Ցաւելուած՝ *Վ. եպ. ՄԱՆԿՈՒՆԻ՝ « Գէորգ Դ. եւ իր ժամանակը*, Նկարներ:

Տարեշրջանը լրացած ըլլալով՝ բաժանորդներէն եւ գործակալներէն կը խնդրուի փակել իրենց հաշիւները:

**S. VRATZIAN**

**13, Rue des Platanes Cité Jardins. Plessis – Robinson (Seine), France:**

«*ՎԷՄ*»ի Ֆրանսայի ընդհանուր գործակալն է՝ Լ. Գեւոնեան, **17 Rue Damesme,** PARIS (13e):



*ԻՍԻ ԼԷ ՄՈՒԼԻՆՈՅԻ Հ. Կ. Խաչի մասնաճիւղը իր շնորհակալութիւնները կը յայտնէ Օր. Հայկուհի Բանուեանի եւ Պ. Արտաշէս Ցակոբեանի որ իրենց նշանախօսութեան առթիւ նուիրեցին 50 ֆրանք:*


**Le Gérant: H. STEPHAN**

**Imprimerie A. DER (AGOPIAN)**

**17, Rue Damesme, PARIS (13e)**

# ՙՙՊԱՏԵՐԱԶՄ ԵՒ ԽԱՂԱՂՈՒԹԻՒՆ,,

»»»··«««

(Խմբագրական «ՅՈՒՍԱԲԵՐ»ի)

Ծանր օրեր կ՚ապրինք. անհուն վէրք ու վիշտ երէկուընէ. թանձր մշուշ՝ այսօր խոկ ու սպառիչ անստուգութիւն՝ վաղուան համար:

Պատերազմը դադրած է չատոնց. յաղթականները կը մարսեն իրենց աւարը. ճիչդ է տագնապով ու կասկածանքով, բայց կը մարսեն. պարտուածները՝ կը չոկուին, ոտքի կը կանգնին ու օրէ օր ժանիք կը ցուցադրեն:

Հայն է որ դեռ կը շարունակէ մղձաւանջի մէջ ապրիլ. անոր սրտին, անոր հոգիին, անոր բովանդակ գոյութեան շուրջ է որ դեռ կ՚որոտան թնդանօթները. կը պտտւքին մահաբեր փոթորիկները:

...

տեղծագործ պատրաստութեան:

Հայ միտքը պէտք է գործէ. հայ հոգին պէտք է խլրտի ու ստեղծագործէ. հայ դրականութիւնը, հայ արուեստը պէտք է հասնին հայ մարդուն ու բազմութեանց, հարստացնելու համար զանոնք. զրահելու համար անոնց հոգիները եւ կորովը, փառքի ու հերոսական խոյանքներու նոր պատնէշներ կանգնելու համար:

Զարգացնենք մենք մեզ — մեր անփութութիւնը, մեր անտարբերութիւնը, մեր մեղկութիւնը՝ ազգային մշակոյթի ու, մասնաւորապէս, արուեստին ու գրականութեան հանդէպ, առօրեայ հոգերու, քաղաքական պայքարներու նախապատուութեամբը:

...

Եթէ կ՚ուզենք յաղթել ստուգապէս ու պահել մեր յաղթանակին պտուղը:

## «Դաշնակցութեան Օր»ը ՊԻՐԷՈՆԻ ՄԷՋ

Դաշնակցութեան Օրը մեծ խանդավառութեամբ տօնուած է Լիփազմայի գաղթակայանին մէջ: Այս առթիւ « Նոր Օր » կը գրէ.—

Հանդիսականներուն համար հաճելի անակնկալ մը եղաւ ներկայութիւնը մեր վեթերան ընկերներէն Ա. Ջամալեանի, որ խօսեցաւ Դաշնակցութեան եւ հայ ժողովուրդի ու անոր ցածհոգի թշնամիներու մասին, օրինակ առնելով Միքէլ Անճէլոյի գլուխ գործոց արձանը «Մովսէս»ը: «Ինչպէս Միքէլ

...

# ԼՈՒՌ ՑԱՒԵՐ

Անհատական բողոքն ու գոյլոյթը, աշխատանքն ու ստեղծագործութիւնը, երբեք հրաշքներ չեն կրնար գործել, որքան ալ ըլլան ուժեղ եւ տաղանդաւոր:

Անհատը մարդկային ընկերութեան մէջ անզօր է, երբ բազմաթիւ անհատներով դէպի հրաշափառ խէջալը չի ձգտիր: Մանաւանդ մեզի պէս անտէր ու հալածական, ցիրուցան ժողովուրդի մը համար:

Ի՞նչ կ՚արժէն Եւրոպայի պողոտաներուն վրայ ծլած ու ծաղկած տաղանդները, քանի որ իւրաքանչիւր լոյս աշխարհ եկած հանճար, ուրիշներուն սեփականութիւնը, փառքը եւ յաղթանակը կը նկատուի: Օրինա՞կ կը փնտռէք:

Ահա ձեզի հատ մը: Աշխարհահռչակ

...

# ԱՂՋԿԱՆ ՄԸ ՅԱՅՏՆՈՒԹԻՒՆՆԵՐԸ

## ԽՐՈՒԱԹՆԵՐՈՒ ԱՀԱԲԵԿՉԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԵԱՆ ՄԱՍԻՆ

ԽՄԲ.— Երրորդ եւ վերջին մասն է այս: Առաջին եւ երկրորդ մասերը տեսնել « Յառաջ »ի հոկտեմբեր 19 եւ 20 թիւերուն մէջ: Տեղական թերթերը այս առթիւ կը գրեն թէ բուլղարան աղջիկը, Փոկորելէց, մահուան բռպառնալիք ստացած ըլլալով, գաղտնի ոստիկաններու պաշտպանութեան տակ դրուած է.—

Նախկին – նշանածս, Փէրչէց, ախտաւոր ինքնասիրութեամբ մը լեցուած, շատ կուշտ կը վերաբերուէր իր ստեղծած կայանին աշխատաւորներուն հետ: Եւ առաջին խկ օրերուն, ծանր սխալ մը գործեց հանդէպ իր ստորադասներուն: Երկու զատակարգի բաժնած էր կայանի աշխատաւորները, —

...

այլեւս կը կոչուէր Եոզէֆ Շթաժնէր, խկ ես՝ Օլկա Շթաժնէր:

Ամէն իրիկուն թատրոններն էինք կամ զբօսատուները: Միաժամանակ կը կատարէի Փէրչէցի անձնական քարտուղարի պաշտօնը:

Այդ շրջանին մեր շուրջը տարօրինակ դէմքեր կային: Մեզի հետ կուգային միայն հունգար սպաներ, որոնք կը պատկանէին սպայակոյտին, ինչպէս նաեւ պաշտօնատարներ արտաքին նախարարութեան կապուած: Սպաներուն մէջ, մեզի կ՚այցելէր ամէնէն աւելի գնդապետ Կէորկ Փէթրիչէվից, հարիւրապետ Վալէրի Սթէֆան: Առաջինը, ըստ Փէրչէցի տուած տեղեկութեան, մաերիմ բարեկամն էր

...

հրաման տրուեցաւ հաղնել իրենց համազգեստները: Փավէլիչի եւ Փէրչէցի հետ, բոլորը լուսանկարուեցան ընդհանուր խրուաթական դրօշականներու քաղաքական նուիրուած օրացոյցի մը վրայ:

Փավէլիչ այդ առթիւ ճառ մըն ալ խօսեցաւ, յայտարարելով որ մօտ է պատերազմը: Ատոր վերջ պիտի դառնէ տարագիրներուն տառապանքը, որովհետեւ Իտալիա կարճ ժամանակի մը ընթացքին պատերազմ պիտի յայտարարէ Եուկոսլավիոյ դէմ եւ այն մենայն հաւանականութեամբ պիտի յաղթէ:

Յետոյ Փավէլիչ մեկնեցաւ Պուտափէշթ, ընկերակցութեամբ Փէրչէցի: Այնտեղ Փավէլիչ տեսակցութիւններ ունեցաւ հունգար քաղաքական շրջանակներու հետ: Մասնաւորապէս տեսակցեցաւ գնդապետ Փէթրիչէվիչի հետ:

...

մեծ գումար մը: Սակայն ժամանակ մը վերջ Քաչարքճին սպաննուեցաւ եւ Փէրչէցի ծրագիրն ալ ջուրն ինկաւ:

## Մշակոյթի օրը Պերլինի մէջ

— o —

ՊԵՐԼԻՆ, 21 հոկտ. (Յառաջ).—Հայ մշակոյթի տօնահանդէսը — ըսել կ՚ուզուի «Մշակոյթի Օր»ը — այս տարի եւս տեղի ունեցաւ հոկտ. 20ին, շաբաթ երեկոյեան: Պ. Ա. Շալճեանի բացման խօսքէն ետք, բանախօսեց Տոքթ. Արտ. Աբեղեան հայ լեզուի պատմութեան մասին եւ արտայայտուեցաւ հետեւեալ իմաստով.—

...

## FILMS RECOMMANDÉS

ՓԱԹԷ – ՆԱԹԱՆԻ ՍԻՆԷՄԱՆԵՐԸ
ՅԱՅՏԱԳԻՐ 26 ՀՈԿՏ.—1 ՆՈՅԵՄԲԵՐ

LUTETIA PATHE. L'Or (Brigitte Helm)
DEMOURS PATHE. Arlette et ses papas (Max Dearly)
MOZART PATHE. Le scandale (Gaby Morlay)
SELECT PATHE. Le scandale ( Gaby Morlay)
SAINT MARCEL PATHE. Le scandale (Gaby Morlay)
LOUXOR PATHE. Arlette et ses papas (Max Dearly)
LYON PATHE. Arlette et ses papas (attraction)
ROCHECHOUART PATHE. Arlette et ses papas (Max Dearly)
EXCELSIOR PATHE. Arlette et ses papas (Max Dearly)
METROPOLE PATHE.Arlette et ses papas (Max Dearly)
CAPITOLE PATHE. Arlette et ses papas (Ray Ventura)
BARBES PATHE. Princesse Ozarda
FEERIQUE PATHE. Sapho— Au coeur du Pacifique
LECOURBE PATHE. Sapho— Au coeur du Pacifique
MONTPARNASSE PATHE. Sapho — Au coeur du Pacifique
PALAIS DES GLACES PATHE. Sapho — Au coeur du Pacifique
RECAMIER PATHE: Sapho — Au coeur du Pacifique
SAINT CHARLES PATHE. Sapho — Au coeur du Pacifique
PATHE ORLEANS. Sapho — Attraction
BELLEVILLE PATHE. Le masque qui tombe
MAINE PATHE. Sapho — Au coeur du Pacifique
MAGIQUE PAHE. Sapho — Au coeur du Pacifique
**MOULIN ROUGE PATHE. Si j'étais le** Florelle)

BANLIEUE

COLOMBES PATHE. Arlette et ses papas (Max Dearly)
OLYMPIA DE CLICHY. Arlette et ses papas (Max Dearly)
CASINO DE CLICHY. La garnison amoureuse
KURSAAL BOULOGNE. Le train de 8 h. 47 (Bach)
AUBERVILLIERS KURSAAL. Le train de 8 h. 47 (Bach)
ALHAMBRA D'ASNIERES. Le train de 8 h. 47 (Bach)
PATHE CINEMA PALACE (Boulogne). Arlette et ses papas (Max Dearly)

FILMS RECOMMANDES

**MARIGNAN PATHE — NATAN. Caravane (Charles Boyer, Annabella)**
**MARIVAUX PATHE. Une femme chippée (Elvire Popesco)**
**MOULIN ROUGE PATHE. Si je'tais le patron (Max Dearly)**
**EMPIRE PATHE — NATAN. Sidonie panache (Bach, Florelle)**
**IMPERIAL PATHE. Le dernier milliardaire (Max Dearly)**
**MAX LINDER PATHE. L'Orage**
**OMNIA CINE ÎNFOARMATION. Actualités mondiales — Les plantes en voyage**
**VICTOR HUGO PATHE. Lac aux dames (J. P. Aumont)**
**ROYAL PATHE. Le dernier milliardaire (Max Dearly)**



*«Սիփան»ի տխքը՝ «Հայկ ու Վարդան» եւ «Խնուս գեղի մէջ» գինը* 12 *Ֆր.: Կոչկավաճառ Պ. Սեդրակ Տիրատուրեանի մօտ Մարսէյլի մէջ*, 28,Rue Thubaneau:

















Այս Հինգշաբթի, 1 Նոյ. (Toussaint) կէս օրէ վերջ ժամը 3.30ին

Salle GAVEAUի մէջ, 45, Rue la Bôetie

Métro: MIROMESNIL

*Տիկին Կ'ունենայ ԱՐԱՅ ՊԱՐԹԵՒԵԱՆի Ղեկավարութեամբ*

ՍԷՆՖՕՆԻՔ ՄԵԾ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍ

ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԳԻՆԵՐՈՎ

Կը մասնակցի Օր. *ԼԻՏԻ ՏԷՄԻՐՃԵԱՆ* եւ 50 հոգինոց ՍԷՆՖՕՆԻՔ նուագախումբ

Յայտագիր.— Ա. մաս՝ Դասական Երաժշտութիւն (ՊԱԽ, ՇՈՒՊԷՐ եւ ՎԷՊԷՐ)

Բ. մաս՝ ՊԱՐԹԵՒԵԱՆի գործերը:

Իբր առաջին ունկնդրութիւն.— «*Գեղջկական շարք*» երեք բաժանումներով:

ա) *Արշալոյսէն մինչեւ կէս օր.*— բ) *Հովիւներ՝ լերան վրայ.*— գ) *Գեղջկական խրախճանք*:

ԳԻՆԵՐ՝ ԲԱՑԱՌԱԲԱՐ 20, 15, 10, 8, 7 ԵՒ 5 ՖՐԱՆՔ

Հանդէսը կը վերջանայ ժամը 6.30ին: Նուագման պահուն սրահին դռները փակ կը մնան:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Պ. Գէորգ Ցնծալեան, Օր. Ալիս Պերճուհի Ցնծալեան շնորհակալութիւն կը յայտնեն ամէն անոնց որոնք անձամբ, գրաւոր եւ ծաղկեպսակով ցաւակցութիւն յայտնեցին տիկ. *ԶԱՐՈՒՀԻ ՑՆԾԱԼԵԱՆ*ի դառնաղէտ մահուան առթիւ:







## ԱԶԳԱՅԻՆ ՊԱՐԳԵՒԱԽԱՂ

ԵՐՐՈՐԴ ՇԵՐՏԻ ՎԻՃԱԿԱՀԱՆՈՒԹԻՒՆԸ ՏԵՂԻ Կ'ՈՒՆԵՆԱՅ

**ՆՈՅԵՄԲԵՐ 14ԻՆ**

ԳԼԽԱՒՈՐ ՊԱՐԳԵՒՆԵՐԸ

| Թիւ | Ֆրանք | Գումար ֆր. |
|---|---|---|
| 1 | 2·500·000 | 2·500·000 |
| 5 | 1·000·000 | 5·000·000 |
| 5 | 500·000 | 2·500·000 |
| 100 | 100·000 | 10·000·000 |
| 100 | 50·000 | 5·000·000 |
| 200 | 25·000 | 5·000·000 |
| 1·000 | 10·000 | 10·000·000 |
| 10·000 | 1·000 | 10·000·000 |
| 100·000 | 100 | 10·000·000 |
| Գումար 111·411 թիւ, | որոնք կը շահին 60·000·000 ֆր. | |

*Ծախուած են բոլոր ամբողջական տոմսերը:*
*Տրամադրելի ունինք սահմանափակ թիւով տոմսերու մասեր՝* 1/2, 1/4, 1/10 *եւ* 1/20*ին*

**ԾԱԽՈՒ ԵՆ ՄԻՆՉԵՒ 14 ՆՈՅԵՄԲԵՐ ԻՐԻԿՈՒԱՆ ԺԱՄԸ 9**

*Միեւնոյն անձին չենք կրնար ծախել աւելի քան* 2/2 *կամ* 4/4 *կամ* 10/10 *եւ կամ* 20/20 *համեմատութեամբ:*
*Ապսպրանքներ չենք ընդունիր* Ֆոնթր - ռամպուրսման ձեւով **(Contre Rambourscment):**
*Հեռագրով ապսպրանքներու ժամանակ, նշանակել ճիշդ հասցէ:*
Նամակները գրել ֆրանսերէն կամ ռուսերէն:

**A. GODOVANNIKOFF**

**30, Quai de Passy, Paris (16)**

**TÉL. JASMIN 01-50** **Métro: Passy**

Հեռագրական հասցէ.— **GODOVANNIKOFF, PARIS**



Վաղը Հինգշաբթի, 1 Նոյ. (Toussaint) կէսօրէ վերջ ժամը 3.30ին

Salle GAVEAUի մէջ, 45, Rue la Bôetie

Métro: MIROMESNIL

*Տեղի կ'ունենայ* *ԱՐԱՅ ՊԱՐԹԵՒԵԱՆ*ի *Ղեկավարութեամբ*

## ՍԷՆՖՕՆԻՔ ՄԵԾ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍ

ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԳԻՆԵՐՈՎ

Կը մասնակցի Օր. *ԼԻՏԻ ՏԷՄԻՐՃԵԱՆ* եւ 50 հոգինոց ՍԷՆՖՕՆԻՔ նուագախումբ

Յայտագիր. — Ա. մաս՝ Դասական Երաժշտութիւն (ՊԱԽ, ՇՈՒՊԷՌ եւ ՎԷՊԷՌ)

Բ. մաս՝ ՊԱՐԹԵՒԵԱՆի գործերը:

Իբր առաջին ունկնդրութիւն.— «*Գեղջկական շարք*» երեք բաժանումներով:

ա) *Արշալոյսէն մինչեւ կէս օր.*— բ) *Հովիւներ՝ լերան վրայ.*— գ) *Գեղջկական խրախճանք:*

ԳԻՆԵՐ՝ ԲԱՑԱՌԱԲԱՐ 20, 15, 10, 8, 7 ԵՒ 5 ՖՐԱՆՔ

Հանդէսը կը վերջանայ ժամը 6·30ին: Նուագման պահուն սրահին դռները փակ կը մնան:







## ՅՈՒՇԱՏԵՏՐ

*Ալֆորվիլի Հ. Կ Խաչի ընդհ. ժողովը այսօր չորեքշաբթի երեկոյ ժամը 8ին Ակումբին մէջ: Օրակարգ, վեցամսեայ հաշուետուութիւն, ընթացիկ հարցեր:*

*Ժողովէն յետոյ ընթերցանութիւն եւ մտքերի փոխանակութիւն:*

### ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆՑԻՆԵՐՈՒՆ

Նոյեմբեր 20էն պիտի սկսինք ծախել մեր նոր օրացոյցները «*Վասպուրական*» օրացոյցը: կազմուած է նոյն բովանդակութեամբ (*կենսագրական, աշխարհագրական, եւ ուրիշ բաժիններով*): Ապսպրանքի համար դիմել,

*A Mardirossian*ի, *Poste Restante Colbert, Marseille:*

**Imprimerie A. DER (AGOPIAN)** **17, Rue Damesme, PARIS (13e)**
**Le Gérant: H. STEPHAN**